ՀԿ (բ) Կ Կենտկոմի կուլտ. պրոպագանդայի
յեվ ագիտացիայի բաժին

# ԱԳԻՏԱՏՈՐԻ
# ԲԼՈԿՆՈՏ

## № 21 (28)

ՀԿ(բ)ԿԿ հրատարակչություն—«Խ. Հայաստան»
ՅԵՐԵՎԱՆ — 1937

# ՀԱՅԿԱԿԱՆ ԽՍՀ ՏԱՍՆՅՈՒԹ ՏԱՐՈՒՄ

(փաստեր և թվեր)

*Բոլշևիկյան կուսակցությունը. ԼԵՆԻՆԻ-ՍՏԱԼԻՆԻ անմիջական ղեկավարությամբ 1917 թ. հոկտեմբերին, Ռուսաստանի պրոլետարիատին և չքավոր գյուղացիությանը դուրս հանեց դրոհի տարավ կապիտալիզմի դեմ՝ հանուն պրոլետարիատի դիկտատուրայի ստեղծման, հանուն դարերով ճնշված բանվորների, աշխատավոր ժողովրդի ազատ ու յերջանիկ կյանքի:*

*Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ Հեղափոխությունը տապալեց ցարական պաղլի միապետությունը, փշրեց կալվածատիրական, բուրժուական կարգերը և ստեղծեց աշխարհում առաջին պրոլետարական դիկտատուրան: Մի բան, որի ստեղծման փառքն ու պատիվը պատկանում է ռուսական պրոլետարիատին և նրա առաջատար ջոկատ բոլշևիկյան կուսակցությանը:*

*«Մենք իրավունք ունենք հպարտանալու*

և մեզ յերջանիկ համարելու այն բանի համար, վոր մեզ առաջինը վիճակվեց յերկրագնդի մեկ անկյունում տապալել այն վայրի գազանին՝ կապիտալիզմը, վորը հողը վողողել է արյամբ, մարդկությանը հասցրել է սովի ու վայրենացման և վորը կկործանվի անխուսափելիորեն ու շուտով, վորքան էլ հրեշավոր կերպով գազանային լինեն նրա հոգեվարքի կատաղության արտահայտությունները»:

(Վ. Ի. ԼԵՆԻՆ, յերկեր, հատոր 23, եջ 109):

Այո, մեր յերկրի ամբողջ աշխատավորությունը հպարտ է նրա համար, վոր նա տապալեց կապիտալիզմը մեր յերկրում, դրանով իսկ նոր դարաշրջան բաց արավ մարդկության պատմության մեջ:

Մեր յերկիրը հպարտ է նրանով, վոր առաջինն է պատմության մեջ դարբնում սոցիալիստական հասարակություն:

Հպարտ ենք, վոր խայտառ վերացրինք գործազրկությունը, մեր մարդկանց համար ստեղծելով յերջանիկ ապագա, ապահովելով նրա վաղվա որը:

Հպարտանում ենք մենք մեր հիանալի ինդուստրիայով— աշխարհում ամենախոշոր



և առաջավոր սոցիալիստական գյուղատնտեսությամբ, մեր անպարտելի Կարմիր բանակով և, վոչ մի բանից չսարսափող, համարձակորեն իր ապագային նայող մեր աշխատավորությամբ:

Վերջապես հպարտանում ենք մեզ յերջանկություն տվող, մեր նվաճումները հանրագումարի բերող, այն ամրապնդող Ստալինյան Սահմանադրությամբ:

Ահա այդպիսի հպարտությամբ, դեպի իրենց հայրենիքն անսահման սիրով լցված՝ մեծագույն պարծանքի զգացմունքով համակված, դասակարգային թշնամիների դեմ մղած մարտերում կոփված մեծ ԼԵՆԻՆԻ—ՍՏԱԼԻՆԻ փառաբանված կուսակցության նկատմամբ անձնազոհ զգացմունքով, դեպի բոլոր ճնշված ժողովուրդների առաջնորդ, սոցիալիստական հեղափոխության մեծ վարպետ և հանճարեղ, մեր սիրելի ընկեր ՍՏԱԼԻՆՆ ունեցած անսահման սիրո ու նվիրվածության զգացմունքով, մեր մեծ հայրենիքի ժողովուրդները 22 որ առաջ դիմավորեցին Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ Հեղափոխության 20—ամյակը:

Մեր Միության մեծ ընտանիքի անդամ

Հայաստանի ամբողջ աշխատավորությունն այսօր նույն զգացմունքով դիմավորում է Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ Հեղափոխության ծնունդ՝ Հայաստանի խորհրդայնացման 17-րդ տարեդարձը: Մի յերջանիկ տարեդարձ, վորը ծնունդ է առել Հայաստանի բանվորների ու գյուղացիների ջանքերով, Ռուսաստանի մեծ ժողովրդի ոժանդակությամբ, 17 տարի առաջ: 17 տարի առաջ հայ աշխատավորությունը Կարմիր բանակի ոժանդակությամբ տապալեց հակահեղափոխական դաշնակցության արյան, հրի ու սրի անարգ իշխանությունը, ստեղծելով իր սեփական խորհրդային իշխանությունը:

Այսպիսով, տաճկական սուլթանների, ռուսական ցարիզմի սատրապների կրնկի տակ գաղութացված, կեղեքված ազգամիջյան կռիվներից հյուծված հայ աշխատավորությունը, շնորհիվ ԼԵՆԻՆԻ-ՍՏԱԼԻՆԻ հզոր կուսակցության, ազատագրվեց 1920 թ. նոյեմբերի 29-ին: 1920 թ. նոյեմբերի 29-ին Հայաստանի բանվորներն ու գյուղացիները ԼԵՆԻՆԻ-ՍՏԱԼԻՆԻ փառաբանված կուսակցության նշած ուղիով դիմեցին դասակարգային մարտերի և գրոհի ու-



ժով տապալեցին մեր ժողովրդի արյունը ծծող, նրան կեղեքող, նրա կուլտուրան վոչնչացնող, անտանտի վոտքերը լիզող, մեր յերկիրը վաճառահանող հայ բուրժուազիային և նրա արյունառուշտ, ռազմատենչ դաշնակցական տիրապետությունը:

Այդ անարգ իշխանությունը տապալելով, Հայաստանի աշխատավորությունն ընկեր ԼԵՆԻՆԻ-ՍՏԱԼԻՆԻ անմիջական ոգնությամբ վերջ տվեց ազգամիջյան զազիր սպանդներին, ստեղծեց սեր, բարեկամություն յեղբայրակից ադրբեջանական և վրաց ժողովրդի հետ, ծխացող ավերակների կույտ դարձած Հայաստանը դուրս բերեց քայքայված դրությունից, այն դարձնելով ծաղկող սոցիալիստական յերջանիկ յերկիր:

Հայաստանը ԽՍՀՄ ընդհանուր սիստեմայում ծաղկում է որ-ավուր, ժամ առ ժամ:

Ժողովրդական մասսաների նյութական բարեկեցությունը վիթխարի բարձրության հասավ: Հազարավոր հայ աշխատավորներ այսօր տիրապետում են կուլտուրայի, գիտության և առաջավոր տեխնիկայի բարձունքներին:

Շնորհիվ Լենինյան-Ստալինյան ազգային քաղաքականության, Հայաստանը դարու-թացված, քայքայված, մանր, ցիր ու ցան, հետամնաց ագրարային երկրից դարձավ առաջավոր սոցիալիստական արդյունաբերական երկիր: Մեր երկիրն ապրում է հուժկու վերելք, վերացնելով տնտեսական ու կուլտուրական հետամնացությունը, դարձել է ընդհանուր գրագիտության երկիր:

Պայծառորեն բարգավաճեց, ինչպես ԽՍՀՄ-ը, նույնպես և Հայաստանի ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրան: Աշխատանքի, գիտության, կուլտուրայի բոլոր ասպարեզներում աճել են և աճում են բազմաթիվ տաղանդներ, որոնք ամեն րոպե պատրաստ են իրենց զոհաբերելու սոցիալիստական մեծ հայրենիքի համար:

Մեր երկրում ծնունդ է առել և բարգավաճել լենինյան մարդկանց նոր սերունդ, որոնք չգիտեն կալվածատերերի ու կապիտալիստների դաժան կեղեքումն ու սարսափները: Մեր երկրի ժողովրդական տնտեսության, կուլտուրայի բոլոր բնագավառներում աճում է ու ծավալվում



ստախանովյան հուժկու շարժումը: Այդ բոլոր նվաճումներն ու հաղթանակներն իր կրծքով պաշտպանում է մեր պանծալի, հուժկու Կարմիր բանակը:

ԽՍՀՄ-ի ժողովուրդների համաշխարհային պատմական հաղթանակները՝ ԽՍՀՄ-ի, որի լերջանիկ անդամն է Հայաստանը, գրի յեն առնված մեր դարաշրջանի մեծ խարտիայի՝ Ստալինյան Սահմանադրության մեջ:

ԽՍՀՄ-ի Սահմանադրությունը հանրագումարի յե բերում և գրի առնում մեր յերկրի բանվոր դասակարգի և գյուղացիության վողջ նախորդ հերոսական պայքարի արդյունքը, դառնալով միջազգային պրոլետարիատի պայքարի ծրագիրն ու դրոշը, իսկ մյուս կողմից պայքարի սուր զենք՝ ընդդեմ ֆաշիզմի:

Այդ ամբողջ հաջողություններին Հայաստանը հասավ շնորհիվ այն բանի, վոր նա ամեն օր ստանում է ԽՍՀՄ մեծ ընտանիքի և նրա վողեշնչող, հաղթանակներից-հաղթանակ առաջնորդող մեծ ՍՏԱԼԻՆԻ ոժանդակությունը:

Հայաստանը հասավ այդ յերջանիկ կյանքին, վորովհետեվ նա հետեվեց ԼԵՆԻՆԻ-

ՍՏԱԼԻՆԻ ու նրանց պանծալի կուսակցության գաղափարին և 17 տարի սրանից առաջ վերջ դրեց սովի, հրի ու սրի իշխանությանը «իրան հայտարարելով Խորհրդային յերկիր»...

«Տանջված ու բազմաչարչար, անտանելի ու դաշնակների վողորմածությամբ սովի, քայքայման ու գաղթի մատնված Հայաստանը— բոլոր «բարեկամների» կողմից խաբված այդ Հայաստանը, իր փրկությունը գտավ այն բանի մեջ, վոր իրեն հայտարարեց Խորհրդային յերկիր... Միայն խորհրդային իշխանության գաղափարը խաղաղություն և ազգային վերածնության հնարավորություն բերեց Հայաստանին» (ՍՏԱԼԻՆ):

Այո, հայ ժողովուրդն այս յերջանիկ օրվան հասավ հենց շնորհիվ այն բանի, վոր իրեն հայտարարեց Խորհրդային յերկիր, շնորհիվ այն բանի, վոր նա ուշիուշով հետևում է իր լավագույն բարեկամ մեծ ՍՏԱԼԻՆԻ խորհուրդներին, նա հասավ այսօրվա յերջանկության, վորովհետև նրան ամեն օր, ամեն ժամ հետևում է հայ ժողովրդի ամենալավագույն բարե-



կամ, ամբողջ մարդկության հանճար ընկեր ՍՏԱԼԻՆԻ սրատես աչքը:

Հայաստանի աշխատավորությունը պատմական այս հաջողությունները ձեռք բերեց սոցիալիզմի վոխերիմ թշնամիների դեմ մղած ամենադաժան պայքարում:

Տրոցկիստական– բուխարինյան– դաշնակցական (խանջյանական– ամատունիական) և այլ ֆաշիստ– լրտեսների, մարդասպանների, վնասարարների, իրենց մարդկային դեմքը կորցրած, ֆաշիզմին վաճառված, մեծ ճանապարհի բանդան, վոչ մի հենարան չունենալով ժողովրդական մասսաների մեջ, ամեն միջոց գործ եր դնում ֆաշիստական սվինների ուժով վերականգնելու կապիտալիստական–բուրժուական կարգերը, մեր հրաշալի հայրենիքը հոշոտման հանձնել ֆաշիզմի շներին, ստրկացնելով խորհրդային մեծ ժողովրդին:

Այդ բանը չհաջողվեց: Շնորհիվ խորհրդային հետախուզական սրատեսության և զգոնության, խորհրդային ժողովրդի, հայ ժողովրդի թշնամիների բները քանդվեցին, հողմացրիվ արվեցին ու այսուհետև ևս անողոքաբար կվոչնչացվեն:

Հայաստանի ժողովուրդն այսուհետև ևս

է՛լ ավելի սերտորեն կհամախմբվի կոմունիստական կուսակցության շուրջը, իր լավագույն բարեկամ, առաջնորդ և ուսուցիչ մեծ ՍՏԱԼԻՆԻ շուրջը, ու վճռականությամբ առաջ կգնա դեպի կոմունիստական հասարակության պայծառ բարձունքները: Հայաստանի ժողովուրդը, ԽՍՀՄ ամբողջ ժողովրդի հետ հրճվանքով է նախապատրաստվում ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի՝ Ստալինյան Սահմանադրության հիման վրա կատարվելիք ընտրություններին: Ստալինյան Սահմանադրությունը Հայաստանի ժողովրդին բերում է ավելի յերջանիկ ու բերկրալի կյանք, մի կյանք, որը պայքարի ուժով կոփվել է 17 տարում և այսօր Հայաստանի ժողովուրդը մեծ խանդավառությամբ դիմում է իր յերջանկության 17 տարեդարձին, մի անգամ ևս հանրագումարի բերելով իր նվաճումները:

Ահա Հայաստանի սոցիալիստական յերկրի հաղթանակների՝ մեր յերջանիկ ժողովրդի համար համաշխարհային պատմական նշանակություն ունեցող՝ թվերն ու փաստերը:



# ԲԱՐԳԱՎԱՃՈՂ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԸ

Մեր յերկրի աշխատավորությունը ԼԵՆԻՆԻ-ՍՏԱԼԻՆԻ կուսակցության ղեկավարությամբ արմատապես փոխեց յերկրի սոցիալ-տնտեսական կառուցվածքը: Գործնականում իրականացվեց մարդկության լավագույն մտքերի յերազը— ստեղծված է նոր սոցիալիստական հասարակարգ, ստեղծված է նոր սոցիալիստական տնտեսություն:

Ամբողջ ժողովրդական տնտեսության մեջ՝ անբաժանելիորեն տիրապետում է արտադրության սոցիալիստական յեղանակը: Բոլոր շահագործող դասակարգերը լիկվիդացիայի յեն յենթարկված:

Ինչպես այդ ցույց տվեց ընկեր ՍՏԱԼԻՆԸ,

ԽՍՀՄ Սահմանադրության մասին տր-ված էր պատմական զեկուցման մեջ: Հայաստանը, վորպես ԽՍՀՄ-ի անբաժանելի մաս, աճել ու ամրապնդվել է 17 տարվա ընթացքում, հետամնաց սովի ու աղքատության յերկրից դարձել է ԽՍՀՄ-ի առաջավոր, կուլտուրական հանրապետություններից մեկը:

Յեթե Հայաստանի բնակչության թիվը դաշնակների Փաշիստական տիրապետության որոք, սիստեմատիկաբար նվազում եր և 1920 թ. նոյեմբերի նախորյակին հավասար եր ընդամենը 720.000 հոգու, ապա Խորհրդային իշխանության հաստատման հետեվանքով բնակչության թիվն աճում է՝ (առ մեկն հունվարի 1937 թ.) հասնելով մեկ միլիոն 221 հազար 300 հոգու, այլ կերպ ասած՝ բնակչության թիվը գրեթե կրկնապատկվում է դաշնակ-Փաշիստների տիրապետության ժամանակաշրջանի համեմատությամբ:

Յեթե բնակչության բնական աճը 1901-14 թ. թ. ընթացքում կազմել է տարեկան միջին հաշվով 1,36 %, ապա 1927-36 թ. թ. ընթացքում, կազմում է 3,2 %: Այս փաստը յերկրի տնտեսական, կուլտուրա-



կան աճման, բնակչության կուլտուրական, նյութական-կենցաղային բարեկեցության բարձրացման անհերքելի ապացույցն է:

Նախախորհրդային Հայաստանում՝ ցարական իշխանության և դաշնակների տիրապետության ժամանակ, մինչև մեկ տարեկան հասակի յերեխաների մահացությունը կազմում եր 253՝ յուրաքանչյուր հազարից, իսկ 1926 թվին՝ նվազում է, իջնելով մինչև 105-ի, 1935 թ. 83-ի:

Ժողովրդական տնտեսության և սոցիալիստական կուլտուրայի բարգավաճման կապակցությամբ, յերկրի բնակչության թվական կազմի աճմանը զուգընթաց՝ փոխվում է նաև նրա սոցիալական կազմը: Յեթե բանվոր-ծառայողների թիվը 1926 թ. կազմում եր ամբողջ բնակչության 12,69 %-ը, ապա 1935 թ., յերկրի ինդուստրացման հետեվանքով, աճել է, հասնելով 23,31 %-ի:

Հիմնովին փոխվել է գյուղի բնակչության սոցիալական կազմը. այժմ գյուղի սոցիալիստական վերակառուցման և կոլտնտեսային կարգերի հաղթանակի հետեվանքով, կոլտնտեսային գյուղացիությունը (ներառյալ կոոպերացված տնայնագործնե-

րըն ու արհեստավորները), հասել է բնակչության ընդհանուր թվի 61 %-ին, 1926 թ. 0,1 %-ի փոխարեն: Կոլտնտեսային կարգը գյուղում անբաժանելիորեն տիրապետող է հանդիսանում: Կոլեկտիվացման տոկոսն առ մեկը հուլիսի 1937 թ., կազմում է 88,7 %, իսկ ցանքերի տարածությունը կազմում է 92,3 %-ը:

Այսպիսով, գյուղացիական, տնտեսապես ու տեխնիկապես ծայրահեղորեն հետամնաց ցարիզմի գաղութ հանդիսացող խղճուկ Հայաստանը, խորհրդային իշխանության հաղթանակի հետևանքով, վերածվեց առաջավոր ինդուստրիալ և մեքենայացված գյուղատնտեսության յերկրի: Յեթե 1920 թվականին Հայաստանի բնակչությունը բաղկացած եր մանր սեփականատերերից, այսօր նրա 90 %-ը սոցիալիստական տնտեսության աշխատավորներ են:

Սոցիալիստական արդյունաբերության զարգացման հետևանքով աճել է բանվորների թիվը: 1936 թ. հանրապետության մեջ բանվորների թիվը հասել եր 104.500-ի, այլ կերպ ասած՝ 1923 թ. համեմատությամբ, աճել է յոթ անգամ, իսկ արդյունաբերության մեջ աշխատող բանվորների



ու ծառայողների թիվը նույն այդ ժամանակամիջոցում աճել է մոտ ութ անգամ: 1936 թ. համեմատությամբ, 1937 թ. բանվորների ու ծառայողների թիվն աճել է 4,7 %-ով, իսկ արդյունաբերության մեջ աշխատող բանվորներինը՝ 9 %-ով:

# ՋԱՐԳԱՑՈՂ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅՈՒՆԸ

Լենինյան-Ստալինյան ազգային քաղաքականության կիրառման հետևանքով, ինչպես մյուս հանրապետություններում, նույնպես և Հայաստանում, աճել և արդյունաբերությունը, կառուցվել են նոր գիգանտներ, ինչպիսիք են. Սինթետիկ կաուչուկի կոմբինատը, Քիմ. գործարանը, Լենինականի մսի կոմբինատը, Տեքստիլ գործարանը, Մեխ. գործարանը, Ցեմենտի գործարանը, Պղնձի ֆլոտացիոն գործարանը, Քանաքեռհեսը, Յերևանի տրամվայը և այլն:

Դաշնակների տիրապետության շրջանից ժառանգություն մնացած ավերակների ու մոխրակույտերի վրա Խորհրդային իշխա-



նությունը տարածեց խոշոր գործարանների ու ֆաբրիկների ցանց. 1936 թ. հանրապետության մեջ, ժողովրդական տնտեսության համախառն արտադրանքի տեսակարար կշիռը (արդյունաբերության և գյուղատնտեսության) կազմում էր 68,7 %: Խորհրդային իշխանության 17 տարիների ընթացքում, Հայաստանի ժողովրդական տնտեսության մեջ ներդրվել է մեկ միլիարդ 335 միլիոն 200 հազար ռուբլի: Միայն յերկրորդ հնգամյակի չորրորդ տարվա ընթացքում, ներդրումը կազմում է 754,5 միլիոն ռուբլի, իսկ 1937 թ. նախատեսված պլանի համաձայն, ներդրվելու յե 195,3 միլիոն ռուբլի (այս թվերի մեջ չեն մտնում կոլտնտեսությունների սեփական միջոցներով կատարվող շինարարությունները):

Նախապատերազմյան շրջանում Հայաստանում գոյություն ունեցող արդյունաբերական ճյուղերից ամենախոշորն Ալավերդու և Ղափանի պղնձի արդյունաբերությունն էր: Էլեկտրաէներգիայի արտադրությունը սահմանափակվում էր Յերևանում, Ալավերդում և Ղափանում յեղած չնչին կարողություն ունեցող էլեկտրոկայաններով: Իմպերիալիստական պա-

տերազմի շրջանում և հատկապես դաշնակների տիրապետության օրոք, յեղած արդյունաբերությունը գրեթե վոչնչացվեց: Արդյունաբերության արտադրանքի տեսակարար կշիռը 1913 թվականի 20,1%-ից իջավ մինչև 10 %-ի, այն էլ քայքայված ու նույնպես հետադիմող գյուղատնտեսության արտադրանքի կրճատման պայմաններում:

Արդյունաբերության ավելի խոշոր ճյուղը՝ պղնձի արդյունաբերությունը, 1917 թ. բոլորովին կանգ էր առել, հանքային ու գործարանային տնտեսությունը քայքայվել էր: Նույնպիսի վիճակի մեջ էին գտնվում նաև արդյունաբերության մյուս ճյուղերը: Միայն խորհրդային իշխանության հաստատումով վերջ դրվեց մինչ այդ թագավորող տնտեսական փլզմանը և Հայաստանը կանգնեց սոցիալիստական շինարարության և ինդուստրացման ուղու վրա:

1937 թ. սկզբին Հայաստանում կար միայն ցենզային արդյունաբերական 232 ձեռնարկություն (ցենզային ձեռնարկություններ համարվում են այն ձեռնարկությունները, վորոնք ունեն առնվազն 16 բանվոր՝ մեխանիկական շարժիչի առկա-



յության պայմաններում, կամ 30 բանվոր՝ առանց շարժիչի):

Արդյունաբերության համախառն արտադրանքը, վորը 1919 թ. կազմում էր 1,7 միլիոն ռուբլի, անցած 17 տարիների ընթացքում աճել է ավելի, քան 127 անգամ: 1936 թ. արդյունաբերության համախառն արտադրանքը հասավ 216,4 միլիոն ռուբլու: 16 տարվա ընթացքում յերկրի ինդուստրացման մեջ ներդրված է 553,7 միլիոն ռուբլի, վորից ելեկտրոշինարարության մեջ՝ 191 միլիոն ռուբլի, արդյունաբերության այլ ճյուղերում 362,8 միլիոն ռուբլի:

Արդյունաբերության արտադրանքի մի քանի հիմնական ճյուղեր տալիս են անման հետևյալ պատկերը—նատուրալ ցուցանիշներով.—

| | 1913 թ. | 1923—1924 թ. | 1936 թ. | 1937 թ. (ըստ պլանի) |
|---|---|---|---|---|
| Պղինձ (տոններով) | 5580 | 37 | 6238 | 7500 |
| Գինի (հեկտոլիտր) | 18,8 | 12,8 | 149,8 | 173,6 |
| Կոնսերվներ (պայմանական տուփ) | 1019 | 786 | 17.328 | 20.559 |

| | 1913 թ. | 1923—1924 թ. | 1936 թ. | 1937 թ. (ըստ պլանի) |
|---|---|---|---|---|
| Ոճառ (տոններով) | 367 | 309 | 6232 | 4.800 |
| Կարբիդ (տոնն.) | չի յեղել | 98 | 16.954 | 58.000 |
| Բյազ (մլն. մետր) | չի յեղել | չի յեղել | 16,4 | 25,2 |
| Ցեմենտ (հազար տոններով) | » | » | 84,0 | 130·0 |
| Մակարոն (տոնն) | » | » | 1568 | 4000 |
| Պղնձարջասպ » | » | » | 3146 | 3500 |



# ԷԼԵԿՏՐՈԷՆԵՐԳԻԱ

Ստեղծված նոր արդյունաբերությունն էլեկտրոէներգիայով ապահովելու համար, Հայաստանում կառուցվել են մի շարք խոշոր էլեկտրոկայաններ.

Ձորագեսը՝ 22,2 հազար կիլովատ կարողությամբ.

Առաջին և յերկրորդ Յերգեսները—6,96 հազար կիլովատ կարողությամբ.

Լենգեսը— 5,28 հազար կիլովատ կարողությամբ.

Քանաքեռգեսը՝ Սևան-Զանգու կասկադի խոշորագույն գիգանտներից մեկը, առ 1-ը հունվ. 1937 թ. 21 հազար կիլովատ կարողությամբ, վորը հետագայում հասցվելու յե 88 հազար կիլովատի.

Առ 1-ն հունվարի 1937 թ. գոյություն ունեցող 42 էլեկտրոկայանների (ներառյալ նաև ֆաբրիկա-գործարանային էլեկտրոկայանները) ընդհանուր կարողությունը

կազմում էր 66,1 հազար կիլովատ, 1913 թվականի 3,1 հազար կիլովատի և 1919 թ. 1,5 հազար կիլովատի փոխարեն:

Էլեկտրոէներգիայի արտադրությունը, որը 1919 թ. յեղել է 1,7 միլիոն կիլովատ ժամ, 1936 թ. հասավ 157,4 միլիոն կիլովատ ժամի, իսկ 1937 թ. սպասվում է ավելի, քան 335 միլիոն կիլովատ ժամ էներգիա:



# ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԲՆԱԳԱՎԱՌՈՒՄ

Գյուղատնտեսության համախառն արտադրանքը, որը 1919 թ. կազմում էր 15,1 միլիոն ռուբլի, 1936 թ. հասավ 98,5 միլիոն ռուբլու և ամբողջ արդյունաբերական ու գյուղատնտեսական արտադրանքի ընդհանուր ծավալի մեջ կազմում էր 36,2 %: Հացահատիկային կուլտուրաների համախառն արտադրանքը 1936 թվականին՝ 1919 թ. համեմատությամբ աճել է ավելի, քան ութ անգամ: Այգեգործության արտադրանքն ավելի քան յերկու անգամ, անասնապահության արտադրանքը՝ մոտ ութ անգամ:

Ագրոձեռնարկումներն գլխավորապես բարձրացրել են բերքատվությունը: 1936 թ. բերքը յուրաքանչյուր հեկտարից 1935 թ. համեմատությամբ աճել է 3,2 ցենտ-

ներով, կամ՝ 36,6 տոկոսով, ըստ որում բամբակի բերքատվությունը՝ 2,6 ցենտներով, ծխախոտինը՝ 2,4 ցենտներով և այլն:

Գյուղատնտեսության բնագավառում ձեռք բերված հաջողությունները բացատրվում են գյուղատնտեսության կոլեկտիվացմամբ ու մեքենայացմամբ:

Գյուղատնտեսության մեջ այժմ կան 24 ՄՏ կայան, վորոնք սպասարկում են 22 շրջանների: Այս տարվա սկզբին յեղած 22 ՄՏ Կայաններն սպասարկում եյին 577 կոլտնտեսության կամ հանրապետության կոլտնտեսությունների 66,9 %-ը, ՄՏ Կայանների կողմից սպասարկվող 20 շրջանների կոլտնտեսությունների 78,9 %-ը: ՄՏ Կայանների տրակտորային պարկը, վորը 1931 թ. կազմում եր 74 տրակտոր՝ ընդամենը 870 ձիու ուժի կարողությամբ, առ մեկն հուլիսի 1937 թ. հասել է 1072 տրակտորի՝ 17562 ձիու ուժի կարողությամբ, այսինքն՝ տրակտորների թիվն աճել է ավելի, քան 14 անգամ, իսկ տրակտորային պարկի կարողությունն ավելի քան 20 անգամ:

Գյուղատնտեսության մեջ, ներառյալ նաև ՄՏ Կայանների մեքենայացումը,



1937 թ. վերջերին կար 1287 տրակտոր՝ 21875 ձիու ուժ կարողությամբ, մինչդեռ 1929 թ. յեղել է ընդամենը 163 տրակտոր: 1934 թ. Հայաստանում կար միայն յերկու կոմբայն, իսկ 1937 թ. բերքահավաքի ժամանակ Հայաստանի կոլտնտեսային դաշտերում աշխատում եյին 111 կոմբայն, կալսիչների թիվը հասել է 207-ի, 1929 թ.՝ 39-ի փոխարեն: Բեռնատար ավտոմոբիլների թիվը 1937 թ. սկզբին հասել եր 206-ի, 1932 թ.՝ 32-ի փոխարեն:

Բերքահավաքի այլ մեքենաների թիվը (առանց կոմբայնների) հասել է 580-ի

Ցանքերի տարածությունը նախապատերազմյան շրջանի 343,7 հազար հեկտարից, վորը 1919 թ. իջել եր մինչև 8200 հեկտարի, այժմ հասել է 436,6 հազար հեկտարի, այլ կերպ ասած՝ աճել է 27%-ով նախապատերազմյան մակարդակի համեմատությամբ, և ավելի, քան 500%-ով՝ դաշնակների անփառունակ տիրապետության ժամանակաշրջանի համեմատությամբ:

Անտառապահությունը, վորը գյուղատնտեսության վերակառուցման ու կոլեկտիվացման տարիներին դաշնակցական-կուլակային կատաղի պրովակացիայի առ-

դեցության տակ զգալի վնաս կրեց, 1934 թ. սկսեց արագ կերպով վերականգնվել ու զարգանալ: Անասունների թվի աճը 1919 թ. համեմատությամբ հետևյալ պատկերն ունի.

Խոշոր եղջերավոր անասունների թիվը 1919 թ. համեմատ. աճել է 2,5 անգամ.

Մանր եղջերավոր անասուններինը՝ 2,8 անգամ.

Խոզերինը՝ 13,7 անգամ.

Ձիերինը՝ 2,5 անգամ:

Այս տարվա հունվարի մեկի տվյալներով, 1936 թ. հունվարի համեմատությամբ խոշոր եղջերավոր անասունների աճը կազմում է 5,5 %, մանր եղջերավոր անասուններինը՝ 17,1%: Անասունների հանրայնացման պրոցեսն ընթանում է ուժեղ թափով: «Ոչ մի կոլտնտեսություն՝ առանց ապրանքային ֆերմայի» լոզունգը գործ է դարձել. 1071 կոլտնտեսություններից առանց ֆերմայի են մնացել միայն 38 կոլտնտեսություն, և այն էլ բամբակագործական ու այգեգործական շրջաններում:



# ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ՆՅՈՒԹԱԿԱՆ ԲԱՐԵԿԵՑՈՒԹՅՈՒՆԸ

Կուսակցության և ժողովուրդների առաջնորդ ընկ. ՍՏԱԼԻՆԻ կողմից կուսակցության 17-րդ համագումարում առաջադրված հիմնական խնդիրներից մեկը՝ բանվորական ու կոլտնտեսային մասսաների բարեկեցության հետագա վերելքը, երկրորդ հնգամյակի վերջում աշխատավորների սպառողական մակարդակը երկու ու կես —երեք անգամ բարձրացնելն իր արտացոլումը գտավ թեթև և սննդի արդյունաբերությունների արագ աճման մեջ: Վերջին տարիների շահագործման հանձնըված Լենինականի մսի կոմբինատը, մակարոնի, ծխախոտի, կարամելի ֆաբրիկները, յուղի, պանրի գործարանները, կա-

րի, կոշիկեղենի և գուլպաների ֆաբրիկ-
ները։

Բանվորների ու ծառայողների տարեկան միջին աշխատավարձը 1925–1926 թ. թ. 564 ռուբլուց աճել է, 1932 թ. հասնելով 1541 ռուբլու, այլ կերպ ասած՝ աճել է 173 %-ով, իսկ 1936 թ. կազմել է 3114 ռուբլի։

Մանրածախ շրջանառությունը Հայաստանում 1936 թ. հասել է 530,7 միլիոն ռուբլու՝ 1924–25 թ.թ. 13,8 միլիոն ռուբլու փոխարեն. այլ կերպ ասած՝ աճել է 38,5 անգամ։

Սոցիալիստական հասարակական սննդի ցանցի շրջանառությունը 1936 թ. հասել է 32,9 միլիոն ռուբլու, 1924–25 թ. թ. 360 հազար ռուբլու փոխարեն, այսինքն՝ աճել է 91 անգամ։

Դրան զուգընթաց, ընդարձակվել է նաև սոցիալիստական հատվածի մանրածախ առևտրական ցանցը, որը 1921 թ. 512 միավորից, 1937 թ. սկզբներին հասավ 2226 միավորի, այլ կերպ ասած՝ աճել է ավելի քան 400 %-ով։ Մեկը մյուսի հետևից յերևան են գալիս նոր, կուլտուրական և կատարելագործված Ունիվերմաղ



խանութներ։ 1937 թ. շահագործման հանձնվեց Յերևանի խոշոր ունիվերմագը։

Հանրայնացված բնակարանային ֆոնդը քսաներկու շրջանային կենտրոններում և քաղաքներում առ մեկն հունվարի 1937 թ. կազմում է 546 հազար քառակուսի մետր, որից խորհրդային իշխանության օրոք կառուցված է 421,9 հազար քառակուսի մետր։

# ԱՌՈՂՋԱՊԱՀՈՒԹՅԱՆ ԲՆԱԳԱՎԱՌՈՒՄ

Չնայած 1919 թ. տարածված համաճարակին, Հայաստանում բուժհիմնարկների ցանցը 28-ից չէր անցնում, իսկ այժմ՝ կան մի ամբողջ շարք այնպիսի բուժհիմնարկներ, վորոնց մասին նախահեղափոխական շրջանում յերազել անգամ չէր կարելի: Այժմ կան բժշկական չորս գիտահետազոտական ինստիտուտներ, 5 դիսպանսեր, մոր ու մանկան 33 կոնսուլտացիաներ, 31 հակամալարիական կայաններ և այլն: Հենց միայն հիվանդանոցների ու կլինիկաների թիվը 1936 թ. հասել է 55-ի (հազարների հասնող մահճակալներով):

Նախահեղափոխական շրջանում բոլորովին գոյություն չեն ունեցել մսուրներ: 1936 թ. Հայաստանում գործել են 73 մշտական և 503 սեզոնային մսուրներ: Ման-



կապարտեզների թիվը յերկրորդ հնգամյակում գրեթե կրկնապատկվեց՝ 1937 թ. հասնելով 508-ի, վորոնցում ընդգրկված են 23,5 հազար յերեխա, կան 1022 մանկական հրապարակներ, վորոնք սպասարկում են 42 հազար մանուկների:

1933 թ. 31,7 հազար բնակչության ընկնում էր մեկ բժիշկ, իսկ 1936 թ. մեկ բժիշկ էր ընկնում 1,7 հազար բնակչության:

Առողջապահության և կուլտուրական շինարարության տեսակետից խոշոր նշանակություն ունի քաղաքների ու շրջկենտրոնների բարեկարգումը: Հայաստանի մայրաքաղաք Յերևանը, վորը մինչև 1920 թ. իրենից ներկայացնում էր հողածեփ խրճիթներով ու քանդված փողոցներով մի ավան, այժմ դարձել է բարեկարգ ու կուլտուրական քաղաք՝ նոր ջրմուղով, կոյուղով, առատ ելեկտրական լուսավորությամբ, տրամվայի գծերի ցանցով, բարեկարգ ու կանաչապատ փողոցներով: Յերևանի տրամվայը, վորը շահագործման հանձնվեց 1933 թ., միայն 1936 թ. ընթացքում փոխադրել է 26,9 միլիոն մարդ, իսկ 1937 թ. 9 ամսվա ընթացքում, ուղեվորների փոխադրումը կազմում է 24,3

միլիոն մարդ։ Տրամվայի գծի երկարությունը հասնում է մոտ 23 կիլոմետրի։

Նախախորհրդային շրջանում Երևանը զուրկ էր կոյուղուց, իսկ այժմ կոյուղու փողոցային ցանցի յերկարությունը հասնում է 25,1 կիլոմետրի։ Երևան քաղաքի ջրմուղը 1936 թ. քաղաքին տվել է 3.162 հազար խորանարդ մետր ջուր՝ 1928 թ. 688 հազար խորանարդ մետրի փոխարեն։ Լենինական քաղաքում և մի շարք այլ շրջաններում կառուցվում են ջրմուղային գծեր։ Ուժեղ թափով ասֆալտապատվում են Երևանի, Լենինականի փողոցներն ու հրապարակները։



# ԿՈՒԼՏՈՒՐԱԿԱՆ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ ԲՆԱԳԱՎԱՌՈՒՄ

Տնտեսական բարգավաճմանն ու կենցաղային բարեկեցության աճմանը զուգընթաց, մեծ ծաղկման է հասել Հայաստանը նաև կուլտուրական շինարարության բնագավառում։ Հարյուր հազարավոր մարդիկ, վորոնք անցյալում խավար էին և տգետ, այժմ հաղորդակից են դարձել ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրային։ Այդ կուլտուրական վերելքը տեղի յե ունեցել ամենաբազմազան ձևերով ու արտահայտություններով։

Այժմ Հայաստանում մինչև 44 տարեկան հասակ ունեցողների անգրագիտությունը վերացման նախօրյակին է գտնվում,

այնինչ, դաշնակցության տիրապետության օրոք նրանց 90%-ն անգրագետ էին: 1937 թ. գործում են անգրագիտության վերացման 1412 դպրոց, որոնցում ընդգրկված են 42,4 հազար հոգի, կիսագրագիտության վերացման 1341 դպրոց, որոնցում ընդգրկված են 35,5 հազար հոգի:

Ընդհանուր, պարտադիր ուսումն իրականացնելու համար 1936 թ. մեզ մոտ գործում էին 1159 տարրական, լրիվ և ոչ լրիվ միջնակարգ դպրոցներ, դաշնակցության տիրապետության ժամանակ (1918–19 թ. թ.) յեղած 154 կիսավեր, մեծ մասամբ չգործող յեկեղեցական-ծխական դպրոցների փոխարեն: Մեր դպրոցներում այժմ սովորում են ավելի քան 241,8 հազար աշակերտ: Բացի դրանից, բանվորների և աշխատավորների համար գործում են բարձր տիպի 63 դպրոց, որտեղ առանց արտադրությունից կտրվելու սովորում են 4848 հոգի: Ներկայումս մենք ունենք ավելի քան 17 հազար ուսանողություն, որոնք ընդգրկված են 57 տեխնիկումներում, կուսխորհրդային դպրոցներում և 11 բարձրագույն ուսումնական հաստատություններում: Բարձրա-



գույն ուսումնական հաստատություններից են պետական՝ Պետական համալսարանը, Պոլիտեխնիկական, Գյուղատնտեսական, Բժշկական, Մանկավարժական, Ուսուցչական, Յերաժշտական, Զոոանասնաբուժական ինստիտուտները և Կոմունիստական ԲՈՒՀ-երն ու դպրոցները: Մեր թված ուսումնական հաստատություններում ու դպրոցներում այժմ սովորում են ավելի քան 300.000 հոգի (չհաշված դասընթացներն ու Կարմիր բանակը), կամ Հայաստանի ամբողջ բնակչության 1/4 մասը:

Վերացվել են ազգային թշնամանքն ու կոտորածները, որոնք կազմակերպում էին դաշնակցականներն ու թուրքական բեկերը: Խորհրդային Հայաստանում ապրող աշխատավոր ադրբեջանական և քուրդ ժողովուրդն ունեն իրենց թատրոնները, դպրոցները, թերթերը և մյուս ազգություններին հավասար՝ լիովին օգտվում են իրենց բոլոր իրավունքներից:

Նախապատերազմյան շրջանում ու դաշնակների տիրապետության օրոք չկար գիտական և ոչ մի հիմնարկ, իսկ այժմ, 1937 թ. Հայաստանում 49 գիտական հիմնարկ կա, որոնցից վեցն արդյունաբե-

13,6 հազար կիլոմետրից ավելի: Հայաստանում գործում են կապի ավելի քան 171 հիմնարկ, ավելի քան 5,5 հազար հեռախոսային կետեր, 19 հազար ելեկտրոլարային և ավելի քան 1,3 հազար եֆիրային ռադիո-ընդունիչներ, վորոնք մեր յերկրի բոլոր բնակավայրերը կապում են միմյանց հետ: Նամակները, թերթերը շրջան են փոխադրվում, գյուղ հասցվում ավտոմեքենաների և ինքնաթիռների միջոցով:

***

Այս նվաճումները հայ աշխատավորությունը ձեռք է բերել իր սիրելի բարեկամ ու մեծ ուսուցիչ ընկ. ՍՏԱԼԻՆԻ ղեկավարության, ցուցումների և հոգատարության շնորհիվ, Լենինի — Ստալինի մարտական կուսակցության ղեկավարության շնորհիվ, յեղբայրական հանրապետությունների, և հատկապես ռուս մեծ ժողովրդի օգնության շնորհիվ:

Հայաստանի աշխատավորության ձեռք բերած նվաճումներն ավելի մեծ կլինեյին, յեթե հայ ժողովրդի վոխերիմ թշնամիները՝ հակահեղափոխական-տրոցկիստական, բուխարինյան, բուրժուա-նացիոնալիստական, դաշնակ-փաշիստական սրիկա-



ները՝ Խանջյանը, Ամատունին և նրանց վոհմակը չվնասեյին հայ ժողովրդին, չծծեյին նրա արյունը: Այդ խմբերը ցանկանում եյին քայքայել Հայաստանը, անջատել այն խորհրդային մեծ Միությունից և այն դարձնել փաշիստական յերկրների գաղութ: Դաշնակ-փաշիստների այդ վոհմակը ցանկանում եր Հայաստանում վերականգնել դաշնակ-փաշիստների իշխանությունը, բուրժուական կարգերը: Նրանց, հայ ժողովրդի այդ յերդվյալ թշնամիներին չհաջողվեց իրագործել իրենց նենգ պլանները: Չհաջողվեց, վորովհետև հայ ժողովրդին, նրա վերածնությանը հետևում եր և հետևում է նրա ամենամոտ բարեկամ, մեր սիրելի հայր մեծ ՍՏԱԼԻՆԻ սրատես աչքը:

Վոչ վոք չի կարող կասեցնել սոցիալիստական շինարարության առաջընթացը Հայաստանում: Ովքեր կփորձեն կասեցնել Հայաստանի հետագա վերելքը, ովքեր կփորձեն ձեռք մեկնել հայ ժողովրդի ունեցած նվաճումներին, կճզմվեն բանվոր դասակարգի հուժկու ձեռքով:

Զասահմանախախտներով ձեռք բերված նվաճումներով, Հայաստանի բանվորները, աշխատավորները և ինտելիգենցիան Լենին-

*Ստալինի դրոշով, ավելի սերտ համախմբվելով Համ Կ(բ)Կ Կենտկոմի շուրջը, մեծ ՍՏԱԼԻՆԻ շուրջը, Խորհրդային Մեծ Միության բանվորների և աշխատավորների հետ միասին ձեռք կբերի նոր հաջողություններ: Հայաստանի աշխատավորությունը դաշնակցական-նացիոնալիստների, տրոցկիստական-բուխարինյան հակահեղափոխական ագենտների դեմ մղվող պայքարում կշարունակի անձնվիրաբար աշխատել ԽՍՀՄ-ի մեծ Միության հզորության ու պաշտպանության հետագա զարգացման, ամրապնդման համար, սոցիալիստական անդասակարգ հասարակության կառուցման համար:*



# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ




Խմբագիր՝ ԲԱԼԱԲԵԿ ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ
Սրբագրիչ՝ Տ. Տերունի
Գլավլիտի լիազոր Ճ— 1259
Հրատ. № 21. Պատվեր № 289
Տիրաժ 10.000

«ԽՈՐՀ. ՀԱՅԱՍՏԱՆ»-Ի ՀՐԱՏ. ՏՊԱՐԱՆ, ՅԵՐԵՎԱՆ